## ՎԷՃԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ

Ռուս համայնավար կուսակցութեան 14րդ համագումարի վերջին նիստին մէջ, Սօքօլնիքով խօսք առաւ ընդդիմադիրներուն անունով եւ պնդեց թէ Խորհրդային Միութեան տնտեսական դրութիւնը պետական դրամատիրութիւն է։ «Մեր դրամական դրութիւնը դրամատիրական է. մեր դրամատուները դրամատիրական հաստատութիւններ են։ Արտաքին առեւտուրի մենաշնորհը կը գործէ դրամատիրական կանոններու համաձայն եւ չկայ մէկ հատիկ գործարան ուր ընկերվարութիւնը իրականացած ըլլայ»։

Նախագահ Ռիքօֆ պատասխանելով, մեղադրեց թէ Սօքօլնիքով Տօըսի ծրագրին ենթարկուելու կը մղէ Ռուսիան։ Զինովիէվ նոր ճառի մը մէջ յայտարարեց. «Օրուան իրողութիւնն է հարուստ գիւղացիներուն յարաճուն ազդեցութիւնը տնտեսական քաղաքականութեան մէջ, ինչ որ դժգոհութիւն կը պատճառէ աղքատ բազմութիւններուն։ Հաւասարութիւն կ'երազեն ժողովրդական զանգուածները եւ անոր անունով է որ ընչազուրկները ապստամբեցան Հոկտեմբերին»։

Զինովիէվի կարծիքով, անհրաժեշտ է աւելի շատ բանուորներ մտցնել կուսակցութեան մէջ։ «Այն տարրերը որ կը քաջալերուին այսօր, վստահելի չեն։ Եթէ մենք մեծ պատերազմ մը մղելու եւ մեր նուաճումները պաշտպանելու ստիպուած ըլլանք, կը կարծէ՞ք որ այդ մարդիկը զէնք առնեն մեզի համար»։

Համագումարը փակուեցաւ Դեկտ. 31ին։ Թրոցքի որ մինչեւ վերջը ներկայ էր, բնաւ խօսք չառաւ։ Սթալին, մեծամասնութեան ներկայացուցիչը, երկարօրէն ծափահարուեցաւ երբ հետեւեալ յայտարարութիւնն ըրաւ.

— Համայնավար կուսակցութիւնը միացեալ պիտի մնայ Զինովիէվի եւ կամէնէվի գործակցութեամբ, եթէ կ'ուզեն, կամ առանց անոնց, եթէ չեն ուզեր։

*** Նոր կեդրոնական կոմիտէն կը բաղկանայ 63 անդամներէ, որոնց մէջ են Սթալին, Ռիքօֆ, Թոմսքի, Քալինին, Պուխարին, Զիչերին, Թրոցքի, կամէնէվ, Զինովիէվ, Ռաքովսքի, Քրասին, Սօքօլնիքով եւն.։ Թէեւ Զինովիէվ, կամէնէվ եւայլն ընդդիմադիրի դիրք բռնած եւ փոքրամասնութեան մէջ մնացած էին, բայց ընտրուեցան, որպէս զի աւելի սուր հանգամանք չառնէ պառակտումը կուսակցութեան ծոցին մէջ։

### Աւելի կը պրկեն օղակը

Իբրեւ հետեւանք վերջին պառակտումներուն, ռուս կոմկուսի կանոնադրութեան վերաքննիչ յանձնախումբը որոշեց որ այսուհետեւ գաւառական թերթերու եւ գաւառի կեդր. կոմիտէներու օրկաններու խմբագրութիւնները կեդր. կոմիտէին հաւանութեան ենթարկուին։ Տեսակ մը հանրաքուէ կատարուելով կուսակցութեան շարքերուն մէջ, հաստատուեցաւ թէ արդիւնքը նպաստաւոր է մեծամասնութեան։ Լէնինկրատի պատգամաւորները բողոքեցին այս որոշումին դէմ իբրեւ հակառամկավարական եւ ուղղուած իրենց դէմ։

Լէնինկրատի գունդը խնդրած է նոր կեդր. կոմիտէ մը ընտրել իրենց շրջանին մէջ, քանի որ արդի կոմիտէն Զինովիէվի կուսակիցներէն կը բաղկանայ։

Մամուլը կը շարունակէ յարձակումները ընդդիմադիրներուն դէմ։ «Փրավտա» իր խմբագրականին խորագիր դրած էր «Կուսակցութիւնը կոտորակելու աշխատանքը կը շարունակուի»։ Թերթը կ'ամբաստանէ Լէնինկրատի պետերը թէ կ'ըմբոստանան համագումարին կողմէ իրենց մասին եղած դատապարտութեան դէմ, եւ երկար յօդուած մը կը հրատարակէ այրի Տիկին Լէնինի դէմ։ Պ. Սթէֆանօֆ (Սկվերցօֆ) «Իզվեսթիա»յի խմբագրապետը, Լէնինկրատ մեկնեցաւ խմբագրական նոր մարմինով մը, ձեռք առնելու համար Լէնինկրատի «Փրավտա»ին խմբագրութիւնը։

### Նոր դաշնագիր ?

Գերմանական թերթերը կը հաւաստեն թէ խորհրդային իշխանութիւնը կը խորհի նոր դաշնագիր մը կնքել Գերմանիոյ հետ, նման անոր որ կնքուեցաւ Թուրքիոյ հետ։

Այս առթիւ մեծ կարեւորութիւն կը տրուի Զիչերինի եւ Գերմանիոյ պատերազմական նախարարին վերջին տեսակցութեան, որ տեղի ունեցաւ շատ մտերմական շրջանակի մէջ։

### Պելժիա պիտի ճանչնա՞յ

Վանտէրվէլտ, Պելժիոյ արտաքին նախարարը, Փարիզ եկաւ Պ. Պռիանի հետ տեսակցելու համար։ Նախարարը լրջօրէն կը խորհի ճանչնալ Խորհրդային իշխանութիւնը. բայց կը թուի թէ երկիրը միաձայն չէ։ Պրիւսէլէն կը հեռագրեն թէ՝ վաճառականներն ու գործարանատէրերը ժողովի դրած են այս խնդիրը։ Ժողովէն յետոյ, կարգ մը պատգամաւորներ յայտարարած են.— «Գործի մարդիկը ազատ են Ռուսիոյ հետ գործ ընելու կամ ոչ. բայց մենք կը կարծենք թէ, ինչ որ ալ ըլլայ, պետութիւնը իրաւունք չունի միջամտելու»։

### Հանքերը ազգայնացնել կ'ուզեն

Պ. Քուք, Անգլիոյ հանքագործներու միութեան ներկայացուցիչը, մօտերս ծրագիր մը պիտի ներկայացնէ դահլիճին, հանքերու ազգայնացման համար, իբրեւ միակ միջոցը տիրող անելէն ազատելու։ Պ. Քուք այս առթիւ կը յայտարարէ թէ Աշխատաւորական կուսակցութիւնը, Արհեստակցական Միութեանց Ընդհ. ժողովը եւ գործաւորները որոշած են անմիջական ազգայնացում պահանջել։ Միակ վիճելի խնդիրն է՝ սեփականատէրերուն ըլլալիք վճարումը։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

Ցարին գոհարեղէնները պիտի ծախուին յառաջիկայ շաբթու Ամերիկայի մէջ։ Ընդհանուր արժէքն է 250 միլիոն տոլար։ Ամէնէն թանկագին կտորն է ցարերու թագը, որ զարդարուած հռչակաւոր «Օրլով» ադամանդով (193 քրատ) եւ 15 միլիոն տոլար կը գնահատուի։

*** Կաղանդի առթիւ Ռուանի մէջ Փարիզի Հ. Մ. Ը. Մ.ի եւ Ռուանի Ֆրանս. ախոյեան խումբին մրցումին Հ. Մ. Ը. Մ.ը տարաւ 4ի դէմ 2։ Ներկայ էր տասը հազար ժողովուրդ։

## ՑՈՒՑԱՏԵՍԴ

Հ. Յ. Դ. Քրիստափոր խումբի ժողովը որ տեղի պիտի ունենար 4 Յունվ. երկուշաբթի գիշեր, Ռուսանողական երեկոյթին պատճառաւ յետաձգուած է 8 Յունվ. ուրբաթ գիշեր ժամը 8·30ին Floria ճաշարանին վերնայարկը, 61 rue Mr. le Prince. métro Odeon.

«ՌՈՍՏՈՄ» Լսարանական միութեան վիճաբանական ժողովը՝ շաբաթ 9 Յունվար։ Մուտքը ազատ է։



Le Gérant : H. TEURNIER
Impr. MASSIS
08bis, Rue Lafayette Paris(10e)

